# ԱԶԳԱՅԻ՞Ն ԵԿԵՂԵՑԻ



Կ. Վ.

ԲԱԳՈՒ
ՏՊԱՐԱՆ Ա. ՂԱՍԱԲԵԱՆԻ.
1907

Azgayin ekeghetsi

# ԱԶԳԱՅԻՆ ԵԿԵՂԵՑԻ




Կ. Վ.

ԲԱԳՈՒ
ՏՊԱՐԱՆ Ա. ՂԱՍԱԲԵԱՆԻ.
1907

Անցեալ մարտի 27-ին՝ ս. Լուսաւորչի տօնի յաջորդ կիւրակէ օրը, խօսեցի Բագուի ս. Լուսաւորիչ եկեղեցում՝ մօտաւորապէս այն բովանդակութեամբ, որ յառաջ է բերած ներկայ գրքոյկի մէջ։ Մի քանի բարեկամներ ցանկութիւն յայտնեցին, որ խօսածս գրի առնուի և տպագրուի։ Կատարելով ահա նոցա ցանկութիւնը՝ շնորհակալութիւն պէտք է մատուցանեմ յատկապէս Արժ. Ղևոնդ ա. քահանայ Տէր-Աստուածատրեանին, որ սիրալիր կերպով իւր վերայ առաւ տպագրութեան ծախքը։

Վաճառուած օրինակների արդիւնքը յատկացուում է գաւառացի հայ սովեալների օգտին։

Կ. Վ.

14 մայիսի 1907
ԲԱԳՈՒ.

# ԱԶԳԱՅԻՆ ԵԿԵՂԵՑԻ։

Երէկ ս. Լուսաւորչի տօնը կատարեցինք, և դեռ նորա կենդանի յիշատակի թարմ տպաւորութեան տակ՝ պիտի խօսեմ այսօր նորա բազմադիմի գործունէութեան մեծ արդիւնքի, նորա արիւն—քրտինք աշխատանքով կազմակերպած ու մեզ ժառանգութիւն թողած Ազգային եկեղեցու մասին։

Դուք գիտէք, որ օտարները մեր եկեղեցին Լուսաւորչական կամ Գրիգորեան են անուանում՝ ս. Լուսաւորչի անունով, իսկ մենք չենք ընդունում այդ պատուանունը. որովհետև նորա գործածողները կամենում են ասել, թէ քրիստոնէութեան հենց առաջին քարոզութիւնը մեր մէջ եղել է ս. Լուսաւորչի միջոցաւ, այսինքն ամբողջ երեք դար Քրիստոսից յետոյ, երբ արդէն վաղուց տարածուած էր այն ուրիշ ազգերի մէջ, հաստատուած ու կազմակերպուած, և ուրեմն այդպէս կազմակերպուած ձևով էլ,—ոչ անմիջական աղբիւրից, այլ իբրև փոխառութիւն՝ մուտք է գործել հայերի մէջ։ Մինչդեռ մենք գիտենք, որ ս. Լուսաւորչից շատ առաջ քրիստոնէութիւն կար Հայոց երկրում, և եթէ ուրիշ եկեղեցիներ իրենց ծագումը մինչև առաքեալների օրերը հասցնել ու այդ մտքով ,,առաքելական‘‘ կոչուել կարող են՝ ամենայն իրաւամբ նոյնն

տնել. և դեռ ուրիշներից աւելի իւր նախնականութեամբ պարծենալ կարող է Հայոց եկեղեցին։ Այնուամենայնիւ ուրիշ տեսակէտից շատ իրաւացի ու պատուաւոր է մեր եկեղեցու համար „Լուսաւորչական“ կոչումը. եթէ դորանով արտայայտւում է այն պատմական ճշմարտութիւնը, որ ս. Լուսաւորիչն ու նորա արժանաւոր յաջորդները՝ իւր ազնիւ տոհմից, Հայոց եկեղեցու ինքնուրոյն կազմակերպութեան հիմնադիրն են՝ ազգային հողի վրայ։ Ս. Լուսաւորչից առաջ Հայաստանում եղել են անշուշտ բազմաթիւ քրիստոնեաներ՝ գուցէ շատ աւելի բազմաթիւ, քան մենք կարծում ենք, բայց դեռ քրիստոնեայ չէր հայ ժողովուրդն իբրև ազգութիւն. եղել են հաւանականաբար ամբողջ քրիստոնեայ հայ համայնքներ՝ իրենց եպիսկոպոսներով, բայց չի կարելի ասել, թէ կար Հայոց եկեղեցի՝ իւր այն առանձնայատուկ կազմովն ու բնաւորութեամբ, որ մենք պատկերացնում ենք այդ անունը տալիս։ Մենք շատ աղօտ գաղափար ունինք առհասարակ այն քրիստոնէութեան մասին, որ եղած պէտք է լինի Հայաստանում նախ քան ս. Լուսաւորիչ։ Անշուշտ նոր հիմք չդրաւ նա, այլ առաքելական քարոզութեամբ այս երկրում հաստատուած հիմքի վրայ կառուցեց Հայոց եկեղեցու մեծ շէնքը. բայց նորան պատկանում է վարպետ շինողի պատիւը, և մեր նախնիք ճանաչել ու գնահատել են այն ըստ արժանւոյն։ Ամէն անգամ, երբ հարկաւոր է եղել պաշտպանել մեր եկեղեցու մի նախնաւանդ կարգը օտար ոտնձգութիւն-

ների դէմ՝ նոքա պարծանքով յենուել են ս. Լուսաւորչի անխախտ հեղինակութեան վերայ և պաշտպանել այն համոզմունքը, թէ նորա առաքելաշաւիղ գործունէութեամբ Հայոց եկեղեցին մի անգամ ընդ միշտ այնպիսի կազմակերպութիւն է ընդունել, այնպիսի ոգի և այնպիսի ուղղութիւն, որ այլ ևս արտաքին միջամտութիւնով պատահական փոփոխութիւնների ենթարկուել չի կարող, այլ պիտի մնայ իւր ամբողջ դրութեամբ նուիրական հայ մարդու համար։

Ահա մեր եկեղեցու այդ առանձնայատուկ կազմակերպութիւնն ու ինքնուրոյն պատմական անցեալն է, որի վերայ կկամենայի ձեր ուշադրութիւնը հրաւիրել։ Բայց նախ քան մասնաւորապէս մեր եկեղեցու մասին խօսելը՝ պէտք է որ փոքր ի շատէ պարզ լինի եկեղեցու ընդհանուր գաղափարը և այն դրութիւնը, որ ներկայացնում են նորա ամէնից աչքի ընկնող բաժանմունքները։

## Ա.

Ինչպէ՞ս յառաջ եկաւ եկեղեցին,—դորա գեղեցիկ բացատրութիւնը տալիս է ինքը Փրկիչը խմորի առակով։ Աւետարանն իբրև մի փիլիսոփայական տեսութիւն չի ուսուցուել աշխարհում, որ մարդիկ իրենց պարապ ժամերին նորանով զբաղուէին, այլ տրուել է իբրև մի նոր կեանքի քարոզ, որ հիմնովին պէտք է յեղաշրջէր հին կեանքը և ձուլէր մի նոր կաղապարի մէջ։ Այդ քարոզութիւնը աշխարհի վերայ տարածուել է՝ ինչպէս ալիւրի մեծ շա-

ղախի մէջ ձգուած մի փոքր խմորը, որը իսկոյն ներգործում է իւր շրջապատի վերայ, ամէն կողմից թափանցում և հետզհետէ խմորում ամբողջ զանգուածը։ Խմորը մէկ էր,—և մէկ է Քրիստոսի գաղափարական եկեղեցին. բայց զանգուածը բաղկանում էր խիստ բազմազան նիւթերից,—և զանազան կերպաւորութիւններ ստացաւ նոյն եկեղեցին իրական կեանքի մէջ։ Ուստի՝ ինչպէս որ եկեղեցու ներքին էութիւնը, նորա ոգին ու ղեկավարող սկզբունքները ըմբռնելու համար լաւ պէտք է հասկանալ այն աւետարանը, որ քարոզուեցաւ հեթանոս աշխարհում, այնպէս էլ նորա արտաքին կազմակերպութիւնը, պաշտամունքը, կարգերը, զանազան բաժանմունքների առանձնայատկութիւնները և նոցա մէջ խտրութիւն ձգող հայեցակէտները պարզաբանելու համար՝ ծանօթ պէտք է լինել այն միջավայրին, որ աւետարանի առաջին քարոզութեան ասպարէզն եղաւ՝ այն ազգերի հոգևոր ու քաղաքական կեանքին, որ նորա ազդեցութեան ներքոյ նոր ձևակերպութիւն ստացաւ։

Գլխաւոր ասպարէզը Հռովմէական ընդարձակածաւալ պետութիւնն էր։ Սկսած այն ժամանակուայ ծանօթ աշխարհի մի ծայրից մինչև միւսը՝ Հերակլեան սիւներից ու Բրիտանական կղզիներից մինչև Եփրատի ու Տիգրիսի հովիտը. սկսած հիւսիսային կիսավայրենի գերմանական ու սարմատական ազգերի բնակութեան սահմաններից մինչև Աֆրիկայի կիզիչ անապատների խորքերը,—այդ հսկայ

պետութիւնը տարածուել, իւր մէջ էր առել գրեթէ ամբողջ ծանօթ, պատմական անցեալ ունեցող մարդկութիւնը։ Հռովմէական իշխանութեան ներքոյ էր այն երկիրը, ուր հանդէս եկաւ ինքը Փրրկիչը. հռովմէական լեգէոնների հարթած ճանապարհներով քարոզելու գնացին նորա առաքեալները, որ այնչափ կարճ միջոցում ամենահեռաւոր տեղեր հասան. և թէպէտ քրիստոնէական քարոզութիւնը նոյն իսկ առաջին դարերում Հռովմէական սահմաններից դուրս էլ տարածուեց՝ Արաբիաում, Պարսկաստանում և այլ երկրներում,—բայց այդ բոլոր երկրներում նորա նախնական քարոզութեան հետքերը գրեթէ իսպառ կորել են, և մնացել է այն միայն, ինչ որ արմատ բռնեց, զարգացաւ և կերպաւորուեց յոյն—հռովմէական աշխարհում։ Ուստի նոյն այդ աշխարհի մէջ եղած կեանքովն ու կարգերով պէտք է պարզել նորա արտաքին կերպաւորութեան էական գծերը։

Քանի՛ քանի ազգութիւններ այդ աշխարհում իրար էին խառնուել, կորցրել իրենց ազգային ինքնուրոյնութիւնը, իրենց կրօնն ու առանձին սովորութիւնները, ենթարկուել փոխադարձաբար միմեանց ազդեցութեան, և ամէնից աւելի տիրապետող տարրի՝ յոյների և հռովմայեցիների ազդեցութեան։ Տիրող լեզուն այստեղ յունարէն լեզուն էր, տիրող օրէնքը՝ հռովմէական օրէնքը։ Յոյնի հետաքրրքիր, հետազօտող միտքը, որ ամէն երևոյթ քննել, ամէն ինչ ուսումնասիրել էր ձգնում, և կանգ չէր առնում, մինչև իրերի խորքը չթափան-

ցէր և Նոցա էութիւնն ըմբռնէր,—ցրիւ էր տուել հին աշխարհի պարզամիտ հասկացողութիւնները՝ շրջապատող բնութեան, և մութ Նախապաշարումները՝ Նորա ղեկավարող զօրութիւնների մասին, ներշնչել էր իւր մտածելու եղանակը հարևան ազգերին, ուսում և արուեստ տուել Նրանց. բայց իւր կողմից եկել դէմ էր ընկել այնպիսի հարցերի, որ ոչ մի մարդկային միտք ինքն իրենից վճռել չի կարող։ Եւ ահա այն, որ ամենամեծ յոյն փիլիսոփաների համար առեղծուած էր մնացել՝ պարզ և հասարակ ամբոխին անգամ մատչելի ձևով բացատրում էին Հրէաստանի պէս մի աննշան անկիւնից եկած անուսում մարդիկ։

Ի՞նչ է կեանքի խորհուրդը, ո՞վ է Նորա սկզբնապատճառը և ինչպէ՞ս է կամենում, որ այդեն մարդիկ՝ իրենց կոչման Նպատակին հասնելու համար,—այս էին ուսուցանում Նոր քարոզիչները, և յունական հոգին ընդունեց Նոր քարոզութիւնը նման ագահութեամբ, որով ծարաւոտ երկիրը երկնքից ընկած ցօղն է ընդունում։ Աւետարանի քարոզը յունական դատողութեան Ներքոյ որոշ բացատրութիւններ ստացաւ, ձևակերպուեցաւ իբրև մի կարգաբանեալ ուսում, որ կեանքի բոլոր հարցերին պատասխան պիտի տար, դարձաւ Քրիստոսի անունով մկրտուածների դաւանութիւնը՝ Նոցա ամբողջ աշխարհայեցողութեան հիմքը։ Իսկ արտաքուստ այս Նոր դաւանութեան հետևողների փոխադարձ յարաբերութիւնները պէտք է ենթարկուէին բնականաբար այն կարգերին և օրէնքներին,

որ Հռովմէական պետութեան մէջ իշխում էին։ Այդ պետութեան ստեղծած շրջանակներում զարգացաւ ու կազմակերպուեցաւ քրիստոնէական համայնքը. Նորա քաղաքական բաժանմունքներին համապատասխան կերպով յառաջ եկան քրիստոնէական եկեղեցւոյ մէջ նուիրապետական աստիճանաւորութիւններ՝ եպիսկոպոսութիւններ, մետրապոլտութիւններ, արքեպիսկոպոսութիւններ, պատրիարքութիւններ։ Եւ ահա այսպէս՝ եկեղեցին իւր ինքնուրոյն կեանքն ունեցող մի զօրաւոր մարմին էր, մի բազմակողմանի և բազմաճիւղ հաստատութիւն՝ մի պետութիւն պետութեան մէջ, արդէն այն ժամանակ, երբ հռովմէական կայսրը քրիստոնէութիւնը ազատ կրօն հրատարակեց ու շատ շուտով նաև պետական կրօն դարձրեց։

Նախորդ կայսրերը հալածել էին քրիստոնէութիւնը՝ չկամենալով տանել, որ իրենց իշխանութեան կողքին մի ուրիշ իշխանութիւն լինի. որ ահագին քանակութեամբ հպատակներ անհնազանդ գտնուին պետական այս ու այն օրէնքներին՝ հպատակուելով մի ուրիշ աղբիւրից բղխած օրէնքների։ Կոստանդին Մեծ եկաւ այն եզրակացութեան, որ հնարաւոր չէր այլևս պետական օրէնքներով խեղդել քրիստոնէութիւնը և զէնքի զօրութեամբ կործանել եկեղեցին, բայց կարելի էր այդ օրէնքները հաշտեցնել քրիստոնէութեան հետ և եկեղեցին պետական դարձնել։ Խոհեմ և շրջանկատ քաղաքականութեամբ ձեռնարկեց նա այդ մեծ գործին և հասաւ նպատակին։

Նա տեսնում էր, որ իւր բազմացեղ պետութեանը պակասում էր հենց այն, ինչ որ զօրեղ էր եկեղեցու մէջ,—հոգևոր միութիւն, ընդհանուր սկզբունքների և աստուածային անսասանելի հեղինակութեան վերայ հաստատուած կարգերի անպայման հետևողութիւն՝ նորա բոլոր ստորաբաժանմունքների կողմից։ Պէտք էր օգտուել այդ զարմանալի ներքին բարոյական միութիւնից։ Գրեթէ անկենդան դարձած Հռովմէական պետութեան հսկայ մարմնի անդամները հետզհետէ կնեխէին, բաժան բաժան կլինէին, եթէ մի նոր հոգի չներշնչուէր այդ մարմնին։ Քրիստոնէութիւնը հոգին էր, որ անդիմադրելի ուժով ծաւալում, ինքն իւր համար մարմին էր ձևակերպում, և նորա թափի առաջ վաղ թէ ուշ կպայթէր անշուշտ հին պատեանը, եթէ մի ճարտար ձեռք չստեղծէր նորա համար յարմար դրութիւն, յարմար պայմաններ՝ նոյն իսկ այդ պատեանի մէջ։ Կոստանդին Մեծի կարող ձեռքը օրինակելի ճարտարութեամբ յառաջ բերաւ այդ բոլոր յարմարութիւնները՝ ըստ երևոյթին ի պայծառութիւն և ի զօրութիւն քրիստոնէական եկեղեցւոյ, ի նսեմութիւն և ի պարտութիւն հեթանոս պետութեան, բայց դժբախտաբար արդիւնքը մի քանի էական խնդիրներում հակառակն էր։

Կոստանդին խոնարհեց Քրիստոսի խաչի առաջ, քրիստոնէութիւն ընդունեց և քրիստոնեայ դարձրեց ամբողջ պետութիւնը։ Եկեղեցին իւր հալածական, իւր արհամարհեալ դրութիւնից ելաւ,

ազատ կերպով պարզեց իւր թևերը, երևան հանեց երկար ժամանակ իւր կրծքի մէջ թագցրած հոգևոր ճոխութիւններն ու կարճ միջոցում աներևակայելի պածառութեան ու մեծութեան հասաւ։ Բայց թանգ գնով էր գնուած այդ մեծութիւնը։ Կոստանդին ի ժողով հրաւիրեց ընդհանուր եկեղեցւոյ ներկայացուցիչներին. 300-ից աւելի եպիսկոպոսներ պետութեան կողմից դիւրութիւններ ստացան, որպէս զի երկրի զանազան ծայրերից ելնեն գան, Նիկիա քաղաքում ի մի խմբուին, քննեն մինչև այդ ժամանակ եկեղեցւոյ ծոցում մշակուած տեսութիւններն այս կամ այն հաւատալիքի մասին, վերջ դնեն նեղ օրերում մթութեան մէջ յառաջ եկած երկպառակութիւններին, և այնպիսի մի ընդհանուր դաւանութիւն, այնպիսի ընդհանուր կարգեր մշակեն, որ եկեղեցւոյ այս նոր՝ փառաւորեալ վիճակին համապատասխան կերպով լոյս աշխարհի մէջ քարոզուէր ու բոլորի համար պարտաւորեցուցիչ դառնար։

Նիկիոյ տիեզերական ժողովը մեծ շուքով գումարուեցաւ և պատւով լուծեց այդ խնդիրը։ Հռովմի մեծազօր կայսրը այնպիսի խոնարհութիւն և յարգանք ցոյց տուաւ եկեղեցւոյ հայրապետներին, այնպիսի պատրաստականութեամբ սուրը դրաւ նոցա տրամադրութեան տակ՝ եկեղեցւոյ դաւանած սկզբունքներն ու հաստատած կանոնները պաշտպանելու, որ այդ հայրերը խօսք չպիտի գտնէին այլևս նորա աստուածասէր իշխանութիւնը գովաբանելու և ազգերի ճանաչողութեան մէջ այդ իշ-

*խանութեան օրինականութիւնը բարձրացնելու համար։ Ուստի այն հանգամանքը, որ նոցա պարզած դաւանութիւններից և որոշած կանոններից այնպիսիք միայն ընդունելութիւն պէտք է գտնէին, որ կայսրը կը վաւերացնէր և իւր կուսակալների ձեռքով գործադրել կտար՝ շատ խորթ չերևաց նոցա աչքում։ Նոքա չնկատեցին կարծես, որ Քրիստոսի ազատ եկեղեցին ենթարկւում էր իւր ներքին բնութեան բոլորովին անհամաձայն պահանջների. որ նա կորցնում էր ամենածանր հալածանքների մէջ պահած իւր անկախութիւնը և արտաքին շուքի ներքոյ դառնում մի օտար զօրութեան կամակատարը՝ պետական կարգերը, կամայ ակամայ նուիրագործող մի պետական հաստատութիւն։ Եւ ահա յառաջ եկաւ այն դրութիւնը, որի վրայ զգայուն և մտածող քրիստոնեաները միշտ խորթ աչքով են նայել. եկեղեցին նեցուկ պետութեան, եկեղեցին ու եկեղեցականութիւնը գործիք շատ անգամ պետութեան ձեռքին՝ պետական—քաղաքական նպատակների համար։*

*Այս դրութիւնը պահպանուեց պետութեան արևելեան բաժնում, ուր Կոստանդին մի նոր՝ քրիստոնէական մայրաքաղաք էր հիմնել, և որ նորա հաստատած հիմունքներով 11 դար շարունակեց իւր գոյութիւնը՝ իբրև Յունական—Բիւզանդիական կայսերութիւն։ Իսկ արևմտեան բաժնում, մի դար հազիւ անցած, հռովմէական իշխանութիւնն ընկաւ, քայքայուեցաւ բոլորովին, նորանոր ազգեր խուժեցին հիւսիսից և քաղաքական նոր պայմաններ յա-*

ռաջ բերին. եկեղեցւոյ համար ևս նոր դրութիւն ստեղծուեցաւ։ Կործանուող Հռովմի մէջ միակ կանգուն մնացած իշխանութիւնը եկեղեցական իշխանութիւնն էր, և այդ իշխանութիւնն արդէն ընդարձակ բարոյական հեղինակութիւն էր վայելում ամբողջ արևմտեան աշխարհում։ Հռովմում քարոզեցին և հեթանոս զօրութեան բուն իսկ գահոյքի առաջ նահատակութեան պսակ ընդունեցին Քրիստոսի մեծագոյն առաքեալները՝ Պետրոս և Պօղոս. Հռովմի եպիսկոպոսները նոցա յաջորդն էին համարւում։ Պետութեան կենտրոնում նստած լինելով նոքա աւելի դիւրութիւն ունէին եկեղեցական զանազան խնդիրների մէջ խառնուելու և հետզհետէ մի տեսակ գերագահող դիրք գրաւելու։ Մօտիկ շրջապատում ուրիշ մրցակից հին եպիսկոպոսական աթոռ չունենալով՝ նոքա առաջին դարից սկսած որոշ հոգևոր վերահսկողութեան պարտք էին սահմանել հեռու մօտիկ գտնուող եկեղեցակայն համայնքների նկատմամբ։ Իսկ երբ ազգերի մեծ արշաւանքն յառաջ եկաւ ու քաղաքական Հռովմի նուաճողները եկեղեցական Հռովմի դաստիարակչական ազդեցութեան տակ ընկան, Հռովմից գնացած քարոզիչները հին աշխարհի քաղաքակըրթութեան հետ քրիստոնէական կրօնը տարածեցին գերմանական և կելտական ցեղերի մէջ, բնականաբար Հռովմը պէտք է դառնար մայր և հոգևոր կենտրոն բոլոր այդ նոր կազմակերպուող եկեղեցական համայնքների համար։ Ինչու՞ ուրեմն Հռովմի եպիսկոպոսները չձգտէին հոգևոր իշխաններ լինել այս

*նոր, քրիստոնէական աշխարհի վրայ։*

*Հին Հռովմը դարերի ընթացքում իշխել էր ազգերին. մարդկութիւնը վաղուց սովոր էր հրամաններ և պատգամներ ընդունել „Յաւիտենական“ քաղաքից։ Բայց հեթանոս իշխանութիւնն արդէն ցոյց էր տուել իր ոչ յաւիտենական լինելը. ՛ինչու՞ եկեղեցին, որ յաւիտենական սկզբունքների վրայ էր հաստատուած և մարդկութիւնը դէպի յաւիտենականի գիրկն առաջնորդելու կոչուած, չկամենար Հռովմի իրօք յաւիտենական մի իշխանութիւն հանդէս բերել և հոգևորական ու աշխարհական զէնքերը մի մի ձեռքում բռնած՝ հոգի ու մարմին միանգամայն նուաճել։ Նոր Հռովմում (Կ. Պոլսում) արդէն կեսարն էր իշխում եկեղեցւոյ վերայ՝ վեհապետական իրաւունքներով. ինչու՞ հին Հռովմում եպիսկոպոսապետ պապը պետութեանց վերայ չիշխէր՝ նուիրապետական իրաւունքներով։ Մեծ էր իշխելու հրապոյրը, և նա դժբախտաբար տարուեց այդ հրապոյրից, մոռացաւ իւր Տիրոջ պատուէրը, որ պաշտօն տանելու չէր եկել, այլ պաշտելու. երկու անյարիր բաներն իրար հետ միացնել կամեցաւ։ Կեսարօ-պապութեան զուգընթաց յառաջ եկաւ այսպիսով պապ—կեսարական իշխանութիւնը, որ իւր ծայրայեղ ձգտումներով լքցրել է միջնադարեան պատմութիւնը և նորագոյն ազգերի յիշողութեան մէջ այն դժուար եղծանելի տպաւորութիւնը թողել, թէ եկեղեցին իւր էութեամբ իշխանասէր է, հոգիներն սորկացնել ու իւր առանձին նպատակներին ծառայեցնել ձգտող։*

Երկու երևոյթների դէմ ևս բողոքներ անպակաս են եղել քրիստոնէական եկեղեցւոյ մէջ։ Ամէն անգամ, երբ Եւրոպայում մի զօրեղ պետութիւն է կազմուել՝ ընթացել է անմիջապէս Կոստանդին Մեծի գծած շաւղով և եկեղեցական պաշտօնէութիւնն իւր անպայման իրաւասութեանը ենթարկել, եկեղեցւոյ կարգերը իւր քաղաքական նպատակների համեմատ գործածել աշխատել։ Բայց գտնուել են մեծ Ամբրոսիոսի, Թէոդորոս Տուդիացու և մեր ժամանակի մի քանի յայտնի հոգևորականների նման փայլուն անձնաւորութիւններ, որոնք աներկիւղ կերպով աշխարհի զօրեղների դիմաց են ելել, աշխարհական իշխանութեան սահմանները ցոյց տրւել և եկեղեցւոյ անկապտելի իրաւունքների պաշտպան հանդիսացել։ Իսկ պապական իշխանութեան նուիրապետական ձգտումների և հոգևոր զեղծումների դէմ մղուած պայքարը յառաջ է բերել մի բազմաճիւղ և բազմալեզու բողոքականութիւն, որ նոր ուղղութիւն և նոր ընթացք տրւաւ քաղաքակրթուած մարդկութեան ներքին կեանքին։

Այնուամենայնիւ հոգևոր զէնքն աշխարհական նպատակների համար գործ դնելու հիմնական զեղծումը մնաց այս կամ այն ձևով նախնի պետական եկեղեցւոյ շառաւիղ գրեթէ բոլոր հին և նոր եկեղեցական կազմակերպութիւնների մէջ և գլխաւոր պատճառն է այն անվստահութեան, որ նոր ժամանակի մարդիկ ցոյց են տալիս դէպի եկեղեցւոյ իւրաքանչիւր պաշտօնեայ և հաստատու-

թիւն, այն արհամարհանքի, որ նոքա՝ թացն ու չորը միասին վառելով, ամփոփում են ,,կղերական'' բառի մէջ։ Եւ ժամանակակից կրթուած հասարակութեան վերայ ամենուրեք ծանրանում է այն թանձր նախապաշարմունքը, թէ իբր կղերականութիւն և քրիստոնէութիւն իրար հետ բնական սերտ կապով կապուած երևոյթներ են. թէ ամէն տեղ և ամէն ժամանակ կրօնն ստեղծել է դասակարգային շահեր և դասակարգային խտրութիւններ, և Քրիստոսի բերած մաքուր ու ամէն խտրութիւն վերացնող կրօնն էլ ինքն է կղերական խտրութիւններ ստեղծել, և ոչ մարդկային խարդախ բնութիւնը, որ ամէն ինչ յեղաշրջել, ամենասուրբն ու վսեմն անգամ խեղաթիւրել ու իւր եսական նպատակների համար շահագործել գիտէ։ Պէտք է սակայն հասկանալ վերջապէս մարդկութեան կեանքն այնպէս, ինչպէս իրօք ընթացել է, և իրողութիւնները վերցնել այնպէս, ինչպէս տրուած են, և ո՛չ թէ դպրոցականի կարճամիտ դատողութեամբ պատճառն ու հետևանքը, ներքին շարժիչներն ու արտաքին արտայայտութիւնները միմեանց հետ շփոթել և անտեղի ընդհանրացումներով այս կամ այն երևոյթը փոխադրել՝ տեղով, ժամանակով և այլ հանգամանքներով տարբեր մի շրջան, ու բռնազբօսիկ բացատրութիւնների խնդիր դարձնել։

Այն ժամանակ կասկածի տեղիք չի մնայ, որ ճշմարիտ կրօնը բացասումն է կղերականութեան. որ հին ուխտի մարգարէներն ու նոր ուխտի աւե-

տարանը իրենց ժամանակի կղերականութեան դէմ մաքառելով են մեր պաշտած կրօնի սկզբունքները հաստատել, և որ քրիստոնէութիւնն իւր էութեամբ հակակղերական լինելով՝ կաթոլիկ եկեղեցւոյ մէջ միայն, պատմական շատ բարդ պայմանների շնորհիւ, կղերական բնաւորութիւն է ստացել։ Իսկ թէ նա կարող էր յառաջ բերել նաև այնպիսի կազմութիւններ, որոնք ազատ մնային կղերական ազդեցութիւնից՝ գործ պայծառ օրինակը ներկայացնում է ահա Հայոց եկեղեցին։

Բ.

Դառնանք ուրեմն դէպի մեր եկեղեցին և գտնենք այն առանձնայատկութիւնները, որոնք ինքնուրոյն տեղ են տալիս նորան եկեղեցւոյ ընդհանուր կազմի մէջ, և որոնք արգելք են եղել նորանում կղերականութեան զարգանալուն։ Երեք հիմնական գծեր աչքի են ընկնում այստեղ. Հայոց եկեղեցւոյ ազգային բնաւորութիւնը, չբռնական ոգին, հալածական վիճակը։ Երեքն էլ նորա ամբողջ պատմական անցեալի հետ կապուած և խորին ուշադրութեան արժանի հանգամանքներ։

---

ա) Հայոց եկեղեցին ազգային եկեղեցի է։ Այդ նշանակում է ամէնից առաջ, որ Հայաստանում մի որոշ ազգութիւն եղաւ այն շաղախը քրիստոնէական խմորի համար, ինչ որ Յոյն—Հռովմէական աշխարհում եղել է բազմազան ազգութիւններից բաղկացած Հռովմէական պետու-

*թիւնը։ Եւ ինչպէս որ այնտեղ պետութեան գաղափարը, պետութեան կարգերը, պետութեան մէջ իշխող լեզուն ու աշխարհայեցողութիւնը իրենց դրոշմը դրին նոր կազմակերպութեան վերայ և յառաջ բերին պետական եկեղեցի, այնպէս էլ մեզանում ազգային գաղափարը, ազգային սովորութիւնները, ազգային լեզուն ու ազգային կեանքի հոգևոր արտադրութիւններն իրենց նշանակութիւնն ունեցան և յառաջ բերին ազգային եկեղեցին։ Հայոց թագաւորը առնուազն 25—30 տարի առաջ է քրիստոնէութիւն ընդունել և իւր երկրի համար պարտաւորեալ կրօն դարձրել, քան Մեծն Կոստանդին։ Նա քաղաքագէտի սառն գատողութեամբ չի մօտեցել քրիստոնէութեան և զանազան նուրբ հաշիւների համար ապարէզ որոնել այդտեղ, այլ մօտեցել է ինչպէս հիւանդը բժըշկին, լեռնական մարդու պարզ հաւատով նոր կրօնի փրկարար զօրութեանն ապաւինել ու թոյլ տուել, որ իւր հզօր կրծքի տակ եռացող կրքերը սանձահարէ, իւր վիրաւոր սիրտը բուժէ ու սրբէ, իւր մռայլ հոգին պայծառացնէ ու վսեմ խորհուրդների ընդունակ դարձնէ։ Նա առևտուրի մէջ չի մտել նոր կրօնի ներկայացուցիչների հետ, այլ թողել է, որ Երկնաւոր Ճարտարապետի ցուցումների համաձայն նոր շէնք կառուցանեն, և ինքը միայն քարեր է բերել հայրենի լեռներից՝ իւր սէգ թիկունքի վերայ, օրհնել է տուել իւր յաղթական սուրը, որ այնուհետև միայն սուրբ գործին ծառայէ։*

Այսպիսով նախաձեռնութիւնը մնացել է ամէն տեսակէտից քրիստոնէութեան քարոզչի, և ո՛չ թէ ընդունողի կողմում։ Իսկ քարոզիչը՝ մեր առաքելատիպ Լուսաւորիչը, իւր գործունէութեան մէջ հետևել է ամենայն հաւանականութեամբ մի ուրիշ մեծ անուանակցի, ս. Գրիգոր Սքանչելագործի, օրինակին և աւելի նշանաւոր արդիւնքի հասել։ Ս. Սքանչելագործը շատ կարճ միջոցում քրիստոնեայ էր դարձրել իւր հայրենի Պոնտական աշխարհը՝ թոյլ տալով, որ ժողովուրդը պահէ նախնական սրբութիւններից ու սովորութիւններից այն ամէնը, ինչ որ հաշտուել կարող էր քրիստոնէութեան հետ, ինչ որ ժողովրդական հոգու մաքուր արտադրութիւնն էր և, քրիստոնէութեամբ սրբագործուած՝ պիտի մնար նոյնչափ սիրելի, ինչպէս առաջ, և սիրելի ու դիւրամատչելի դարձնէր նոր կրօնի խորհուրդները։ Նոյն կերպ վարուեցաւ մեր Լուսաւորիչը։ Նա հեթանոս հայերի սրբավայրերը քրիստոնէական տաճարներ դարձրեց. թոյլ տուաւ, որ նորադարձ ժողովուրդը նոյն աշխարհախումբ բազմութեամբ դիմէ այդ սրբավայրերը և նոյնպիսի ուխտ ու տօն կատարէ քրիստոնէութեան նահատակների յիշատակին, ինչպէս առաջ հեթանոս աստուածութիւնների պատուին էր կատարել։ Շատ կարելի է, որ այդ աստուածութիւններին ուղղուած տաղերն ու փառաբանութիւններն էլ մնացին ժողովրդի բերանում՝ միայն նոր հոգի, նոր բովանդակութիւն ստանալով, և մեր հնագոյն շարականները ցոյց են տալիս,

որ քրիստոնէութեան հիմնական սկզբունքները աւելի այդպիսի երգասացութիւններով են արծարծուել ու հաստատուել ժողովուրդի գիտակցութեան մէջ, քան դաւանաբանական նուրբ բացատրութիւններով։ Ս. Լուսաւորիչ պատուի մէջ պահեց մինչև իսկ հին քրմական գերդաստանները, որոնք բնականաբար ամէնից ջերմեռանդ պաշտպանն էին եղել հեթանոսութեան և կռիւ վարել քրիստոնէութեան դէմ. այդ գերդաստանների զաւակները նոր կրօնի ուսմամբ դաստիարակուելով, նորահաստատ եկեղեցւոյ մէջ կարևորագոյն պաշտօններն ստանձնելով և եպիսկոպոսական աթոռները գրաւելով՝ սկսեցին ապա նոյնչափ ջերմեռանդ նախանձախնդրութիւն ցոյց տալ եկեղեցւոյ սպասաւորութեան գործում։ Իսկ ժողովուրդը սովորած լինելով այդ գերդաստանների անդամներին հոգևոր պաշտօնի մէջ տեսնել և նոցա բերանից հայրենի աստուածների պատգամները լսել՝ հեշտութեամբ պէտք է ընդելանար և կրկնապատիկ սիրով լսէր նոցա, իբրև աւետարանի ճշմարտութեան քարոզիչների։

Քաղաքականապէս Հայոց աշխարհը Տրդատ Մեծի օրով թէպէտ գտնուում էր Հռովմէական իշխանութեան ներքոյ, բայց այդ իշխանութիւնը արտաքին յարաբերութեանց համար միայն նշանակութիւն ունէր, յաճախ անուանական էր և ներքին կեանքի վերայ բոլորովին չէր ազդում։ Այստեղ ուրիշ օրէնքներ, ուրիշ կարգեր և սովորութիւններ էին տիրում. ուստի ընդհանուր եկեղե-

ցւոյ մէջ յառաջ եկած հաստատութիւններն էլ պիտի յարմարուէին այդ կարգերին։ Հռովմէական պետութեան բարդ բաժանումների ու ստորաբաժանումների փոխարէն՝ այստեղ կային միայն մի շարք տոհմական նախարարութիւններ, որոնք անկախ միմեանցից և անկախ իրենց գաւառների ներքին կառավարութեան գործում՝ ենթարկուում էին մի ընդհանուր տոհմական թագաւորի իշխանութեան. դորա համեմատ և եկեղեցին ունեցաւ մի քանի տասնեակ եպիսկոպոսութիւններ և մի հայրապետ՝ իբրև ընդհանրական գլուխ բոլորի, որոնք ամէնքը նոյնպէս սկզբում հաւանականաբար տոհմական իրաւունքներով էին ընտրուում։ Եթէ այդ իրաւունքները հետզհետէ կորցրին իրենց նշանակութիւնը, և ընդհանուր եկեղեցւոյ մէջ տիրող հայեացքը, որով արժանաւորին պէտք է կոչում հասնէր՝ ընդունելութիւն գտաւ նաև մեր մէջ, նուիրապետական կազմակերպութիւնը մնաց այնուամենայնիւ շատ աւելի պարզ, քան ուրիշ եկեղեցիներում,—հայրապետ, եպիսկոպոս և քահանայ՝ երեք հիմնական աստիճանների վրայ հաստատուած, և միջանկեալ բարդ աստիճանաւորութիւնները՝ պատրիարք, արքեպիսկոպոս, մետրապոլիտ և այլն, դարեր անցնելուց յետոյ իբրև տիտղոս միայն ընդունուեցան մեզանում և քիչ անգամ դրական նշանակութիւն ստացան։ Պաշտամունքի, ժամասացութեան, տօնացոյցի և ուրիշ շատ բաների մէջ էլ հարկաւ ընդհանուր եկեղեցին միշտ ազդեցութիւն ունեցել է մեր եկեղեցւոյ վերայ, և ո՛չ ա-

ւելի պակաս չափով այն ժամանակ, երբ դաւանական խտրութիւններ և ծանր վէճեր էին յառաջ եկել եկեղեցիների մէջ, քան երբ մի էին դաւանութեամբ և կանոններով. բայց այդ ազդեցութիւնը ըստ մեծի մասին արտաքին է եղել և ազգային եկեղեցւոյ էական առանձնայատկութիւններին չի դիպել։

Իսկ ազգային ինքնուրոյնութիւնը պահպանելն ամէնից զօրեղ արգելքն է եղել կղերական ոգու զօրանալուն նորա մէջ։ Ինչպէ՞ս պէտք է զօրանար, երբ նորա զարգացման բոլոր պայմանները պակասում էին այստեղ։—Վերցրէք նոյն իսկ կաթոլիկ եկեղեցին, որ բուն ծնօղն է կղերականութեան։ Նորա հովանաւորութեան տակ գտնուած ազգերից որո՞նք են աւելի զգացել կղերական լուծի ծանրութիւնը, եթէ ոչ այնպիսինները, որ հոգւով, լեզուով, բարքով ու սովորութիւններով աւելի ու աւելի հեռու են կաթոլիկ աշխարհի կենտրոնից՝ Հռովմից։ Գերմանական ազգերն ու Նորմաններն աւելի դժուարութեամբ են տարել այդ լուծը, քան Ռոմանական ազգերը, և Ռոմանականներն աւելի դժուարութեամբ, քան բուն Իտալացիք։ Բնական է։ Իտալիայում եկեղեցական լեզուն էլ, պաշտամունքն էլ, պաշտօնէութիւնն էլ ընդաբոյս են. թէպէտ ո՛չ իսկ այստեղ առանց հնութիւնից մնացած և նախնի պետական եկեղեցուց ժառանգութիւն ստացած խորթութիւնների։ Ցամենայն դէպս շատ սակաւ կպատահի, որ մի գերմանացի կամ անգլիացի Իտալիայում եկեղեցական

պաշտօն ունենայ, և եթէ պատահի էլ, պէտք է
անշուշտ իտալացու հին լեզուով՝ լատիներէնով
պաշտամունք մատուցանէ և իտալացու կրօնական
երևակայութեան պատկերացրած Մադոննայի ա-
ռաջ խունկ ծխէ։ Մինչդեռ իտալացի եկեղեցա-
կանը շատ յաճախ պաշտօն է վարում Գերմանիա-
յում ու Անգլիայում ու աշխարհի ամէն կողմե-
րում, կամ թէ չէ Հռովմում նստած բոլոր երկրը-
ների համար կարգադրութիւններ անում՝ ստիպում,
որ ամէն տեղ անպայման կերպով իւր լատիներէնը
գործադրեն, իւր Մադոննային երկրպագութիւն
տնեն, իւր քաւարանից անցնեն՝ մեղքերի թողու-
թիւն ստանելու համար։ Ուստի ամէն տեղ նա հան-
դէս է գալիս իբրև մի օտար, իբրև մի նուաճող
ու բռնացող տարր, որ տեղացիների հոգևոր կեան-
քի մէջ ո՛չ մի զօրեղ կռուան չունի և ստիպ-
ուած է արտաքին հեղինակութեան վերայ հաստա-
տել իւր իրաւունքները, այդ հեղինակութիւնը
պահպանելու համար աշխատանք թափել ու իւր հետ
բերած սրբութիւնների անունով շահագործել տե-
ղական ժողովուրդի հաւատը. և այդպէս, առանձնա-
ցեալ գրութիւն է ստեղծուում նորա համար՝ հետե-
ւորդ դասակարգային խտրութիւններով ու շահերով։

Ազգային եկեղեցւոյ սահմաններում այս բո-
լորի համար ո՛չ մի հիմք չկայ։ Հոգևորականն
այստեղ իւր ժողովուրդի զաւակն է, նորա միջից
ընտրուած, նորա գրկում սնուած և նորա հաւա-
տալիքներով ու հայեացքներով դաստիարակուած։
Այն տաճարը, որին նա պիտի սպասաւորէ, մի

*օտար հաստատութիւն չէ՝ օտար իւր կազմութեամբ ու շահերով, այլ հենց պահպանողն է ու հովանաւորողը այն ամէնի, ինչ որ ընտանի է իւր ժողովուրդի հոգուն և պաշտելի, ինչ որ այդ ժողովուրդի պատմական կեանքի գաղափարական արտադրութիւնն է, հոգևոր գործունէութեան արդիւնքը, նահատակութեան պտուղը։ Եւ երբ նա պաշտօնեայ է լինում հոգևորը եկեղեցւոյ սեղանից վերցնելու և ժողովուրդին բաշխելու համար, ինքն էլ ժողովուրդի սեղանից է ստանում իւր մարմնաւոր սնունդը, և ուրեմն ոչ միայն չի կտրուում, չի բաժանուում նորանից և առանձին ձգտումներ ու առանձին շահեր ունեցող մի դասակարգի մէջ մտնում, այլ ընդհակառակն աւելի է մօտենում նորան, ամէն հայ քրիստոնէի ընտանին, բարեկամն ու խորհրդականը դառնում։*

*Այդպէս են եղել գոնէ մեր բոլոր արժանաւոր հոգևորականները անցեալում, և այդպէս լինելու կոչուած է մեր ամբողջ հոգևորականութիւնը՝ Էջմիածինը այն պատճառով, որ, ինչպէս ակնարկեցի, նորան [illegible] դեր էր վիճակուած՝ իւր պատմական ասպարէզ ելնելու առաջին օրերից ի վեր, և ուսուցանելը, գրելը, քարոզելը՝ լուսաւորութիւն պահպանելն ու տարածելը, նորա գլխաւոր կոչումը մնաց մինչև մեր օրերը։*

---

*բ) Կրթական որոշ ազգեցութիւն եկեղեցին անշուշտ ամէն տեղ ունեցել է, և եւրոպական ազգերից շատերը քրիստոնէութեան շնորհիւ են*

քաղաքակրթութեան տարածել, գիր ու գրականութիւն ստեղծել. առհասարակ դպրոցական գործը միջին դարերում ամբողջ քրիստոնեայ աշխարհի մէջ եկեղեցականութեան ձեռքին է եղել։ Սակայն ոչ մի տեղ այն կարևորութիւնը և այն առաջնակարգ տեղը չեն տուել այդ գործին, ինչպէս մեր եկեղեցւոյ մէջ։ Պատահականութիւն չէ, որ մեր ս. Գրիգորը ,,Լուսաւորիչ" պատուանունն է ընդունել։ Եթէ յոյն ժողովուրդի համար քրիստոնէութիւնն ամէնից առաջ անմահական կեանքի ճանապարհ է, հռովմայեցիների համար բարոյական սկզբունքների իրականացում, հայութեան համար նա եղել է արևելեան ազգերի ընդհանուր տենչանքի լրումն՝ այն յաւիտենական լուսոյ ճառագայթումն, որ մարդոց բնական կեանքի մէջ թագաւորող խաւարը փարատել, նոցա միտքն ու հոգին լուսաւորել և միջոց էր տուել՝ ուղղութեան ճանապարհով դէպի անստուեր լուսոյ կայանները դիմելու։ Այդ պատճառով, ինչպէս Արևելեան—Յունական եկեղեցին ,,օրթոդոքս—ուղղափառ" եկեղեցի է կոչւում, որովհետև ամէնից աւելի հետամուտ է անխախտ ու սուրբ պահելու մի անգամ ընդ միշտ եկեղեցւոյ մէջ հաստատուած դաւանանքըն ու պաշտամունքը, ըստ կարելւոյն մեծ շուք և խորհրդաւորութիւն ընծայելու այդ պաշտմունքին, որ արժանաւոր կերպով պատկերացնէ և զգալի կերպով ճաշակել տայ անմահականը։ Ինչպէս Արևմտեան—Հռովմէական եկեղեցին ,,կաթոլիկ—ընդհանրական" եկեղեցի է կոչւում, որովհետև ամէնից

աւելի ձգտում է ընդհանուր կանոններով, ընդհանուր վարչական կարգերով, եթէ հնարաւոր է, ի սփիւռս աշխարհի տարածուած բոլոր մարդոց միմեանց հետ կապելու և ի մի բերելու՝ մի ընդհանուր Հռովմէական փարախի մէջ, մի ընդհանուր Նուիրապետի գերիշխանութեան տակ, և այդ մտքով դարձնելու մի հօտ և մի հովիւ։ Այդպէս և Հայոց եկեղեցին ազգային—լուսաւորչեան եկեղեցի է, որովհետև իւր գլխաւոր կոչումը տեսնում է յատկապէս հայ ազգին քրիստոնէական լուսով լուսաւորելու և քրիստոնէական սկզբունքներով առաջնորդելու մէջ։ Եւ ինչպէս Յունական եկեղեցւոյ պաշտօնէութեան մէջ ամէնից կարևոր տեղ բռնում է քահանան, որ պատարագ է մատուցանում և սրբազնագործ պաշտօններ կատարում. Հռովմէական եկեղեցւոյ մէջ կրօնաւորը, որ իբրև խոստովանահայր առանձին հօտի հոգիների վերայ է իշխում և իբրև հոգևոր զինուոր ծով ու ցամաք շրջում՝ նորանոր նուաճումներ անելու համար. այնպէս և Հայոց եկեղեցւոյ մէջ՝ վարդապետը, որ ուսուցանում է։

Հայոց եկեղեցւոյ ազգային ուղղութեան հետ նորա կրթական գործունէութիւնն էլ որոշ կերպարանք ստացաւ Ե. դարում, երբ հետզհետէ պակասելով գրեթէ անյայտացան օտար տարրերը եկեղեցական պաշտօնէութեան միջից. երբ մանաւանդ գրերի գիւտով ազգային դպրոց և ազգային գրականութիւն ստեղծուեցաւ, օտար գիտութեան և գրականութեան արդիւնքները հայացնելու հնա-

բաւորութիւն տրուեցաւ։ Այդ դարում և հրապարակ ելան մեր ամէնից մեծ վարդապետները։ Մեծագոյնը նոցանից հայերէն նշանագրերը յօրինեց. միւսները՝ գործակից և աշակերտներ, այդ հրաշալի գիրը բազմակողմանի կերպով գործադրեցին, —իբրև մի դիւթական բանալի, որ ս. Գրքի, եկեղեցական դրականութեան, ազգային պատմութեան և ժամանակակից հոգևոր կեանքի միւս բոլոր գանձարանները բաց էր անում, բաց էր անում փոխադարձաբար հայի հոգին ու միտքը՝ վսեմ խորհուրդների, սրբազան զգացումների և գաղափարական ձգտումների մի ընդարձակ հօսանքի մէջ թաթախուելու ու վերածնուելու։ Այսպիսով եկեղեցւոյ թէ ներքին առաջնորդութեան և թէ արտաքին վարչութեան ղեկը միանգամից թարգմանիչ—վարդապետների ձեռքն անցաւ. նոքա ժողով կազմեցին ս. Լուսաւորչի և յաջորդ հայրերի դրած կարգերը վերահաստատելու համար. նոքա Պարսից թագաւորի առաջ գրին հայութեան հաւատոյն հոգեշունչ դաւանագիրը, որ նշանաբան դարձաւ Վարդանանց պատերազմների համար. նոքա այդ պատերազմների հոգին և իսկական ղեկավարը հանդիսացան, իրենց արեամբ վկայեցին ու պաշտպանեցին ազգային—եկեղեցական ինքնուրոյնութիւնը, դարձան Լուսաւորչից յետոյ ամենաբարձր հոգևոր և բարոյական հեղինակութիւնները մեր եկեղեցւոյ համար։ Այնուհետև վարդապետութիւնը մնաց իբրև ամենապատուաւոր կոչումը մե եկեղեցական պաշտօնէութեան մէջ, ինչպէս և հայ

քրիստոնէական ինքնագիտակցութեան կենդանի պահելը ժողովուրդի մէջ այդ պաշտօնէութեան կարեւորագոյն ծառայութիւնն էր։

Մեր եկեղեցուն վիճակուած էր դարէ ի դար անընդհատ պայքար մղել կրօնով և դաւանութեամբ տարբեր զօրեղ ազգութիւնների դէմ՝ իւր ինքնուրոյնութիւնը պահպանելու համար. իսկ կեանքի ու մահուան այդ հսկայական կռիւը պահանջում էր՝ մի կողմից ժողովրդին շարունակ ուսուցանել և նորա ձեռքը հոգևոր զէնքեր տալ, միւս կողմից օտարների ազդեցութիւններից պաշտպանուել ու նոցա գիմաց հաւատոյ ամուր պատուարներ կանգնեցնել։ Այդ դերն ահա կատարել են վարդապետները։ Ինչպէս Ե. դարում նոցանից շատերը ասորական և յունական ուսման գլխաւոր կենտրոններն այցելեցին, ժամանակակից եկեղեցական գիտութեան ճոխութիւններին անմիջական աղբիւրից ծանօթացան և նոյնը վերարտադրեցին իրենց հայրենիքում, այնպէս և հետագայ բոլոր դարերում մեր եկեղեցականութիւնը՝ չնայած դաւանական խտրութեանը ու վէճերին, կենդանի յարաբերութեան մէջ մնաց միշտ քրիստոնեայ արևմուտքի հետ։ Հայ վարդապետները նախ Բիւզանդիայում յոյն գիտունների մօտ, ապա, երբ Խաչակրաց արշաւանքները նոր դռներ բաց արին՝ կաթոլիկ քարոզիչների մօտ, և երբ հայ գաղթականութիւնները մինչև եւրոպական երկրներ տարածուեցան՝ բուն եւրոպական ուսման կենտրոններում,—օտար լեզուներ սովորեցին, իրենց ժամանակի համեմատ բարձրագոյն կրթու-

թիւն ստացան, օտար հնոցում կռած զէնքերը շատ անգամ յաջողութեամբ գործ դրին օտարների դէմ և մնալով հաւատարիմ հայրենի աւանդութեան՝ ընդունակ գտնուեցան արտաքին հանգամանքներում նորանոր ազգերի կրթական ոգուն յարմարուելու։ Մեր պատմութիւնը այդպիսի վարդապետների փառաւոր անուանց մի ընդարձակ շարք պահել է, որոնք ժամանակակիցների կողմից նկատուել են իբրև մի մի լուսաւորիչներ, ազգի բարերարներ, նորա ինքնուրոյն զարգացման քաջ ախոյեաններ, և ըստ այնմ ամենամեծ յարգանք վայելել։ Նոցանից շատերին հայրապետական աթոռ են բարձրացրել այն յուսով, որ աւելի լայն սահմաններում յառաջ կըտանեն իրենց լուսաւորչական գործունէութիւնը և մեր հայրապետներից շատերի համար՝ սկսած ս. Սահակ Պարթևից մինչև ս. Ներսէս Շնորհալի, Մովսէս Տաթևացի և Սիմէօն Երևանցի, վարդապետ կոչումը մինչև վերջն էլ մնացել է իբրև ամենապատուաւոր տիտղոս։

Մի խումբ ,,թարգմանիչ—վարդապետների‘‘ յիշատակը միայն տօնում է մեր եկեղեցին՝ միատեղ, իբրև նոյն սուրբ գործի սպասաւորների, չնայելով որ նոցանից առաջինը (ս. Մեսրոպ) Ե. դարում է ապրել, իսկ վերջինը (ս. Շնորհալին) ԺԲ. դարում։ Բայց քանի՛ քանի ուրիշները կան, որոնց անունն այլ ևս ոչ ոք չի յիշում, որոնց յիշատակը կամ թաղնուած է այս ու այն ձեռագրի մի անկիւնում, կամ սուզուել անցել է ամէն ինչ

կլանող անյայտութեան մէջ. որոնք սակայն ժամանակին մի մի ճրագ են եղել իրենց շրջապատի համար, որևէ վանքում նստած գրքեր են արտագրել ու շարադրել, իրենց շուրջը մանուկներ և հասակաւորներ ժողովել ու սովորեցրել, սար ու ձոր պատել և քարոզել։ Յիրաւի մեր դժբախտ անցեալը սև ու մութ օրեր շատ է ունեցել. եղել են ամբողջ դարեր, երբ աւերածի ու ամայութեան մէջ ամէն կեանք մեռել, ամէն լոյս մարել և մռայլ ագիտութիւնն է իշխել երկրին. բայց նոյն իսկ այդ ամենախաւար ժամանակներում գտնուել է դարձեալ մի խուլ անկիւն, ուր հայ վարդապետը աւերակների միջից հաւաքած մագաղաթների կտորտանքը խնամքով դարսել, գրադարան ու դպրոց է հաստատել, գրասիրութիւնն ու ուսման տենչը վառ պահել։ Իսկ հենց որ երկրում փոքր ի շատէ վերականգնել են խաղաղութիւնն ու ապահովութիւնը, այդպիսի վարդապետներն ու նոցա աշակերտները ելել են իրենց քաշուած տեղերից և նորից ուսումն ընդհանրացրել, գրականութիւնը ծաղկեցրել եկեղեցական կենտրոններում և ժողովուրդի մէջ։ Այսպէս, արաբական սոսկալի արշաւանքներից յետոյ ծաղկել են դպրավանքերը՝ Բագրատունեաց, Արծրունեաց, Սիւնեաց իշխանութեան տակ. Թուրքական արշաւանքներից յետոյ Կիլիկիան է դարձել՝ ինչպէս քաղաքական անկախութեան, այնպէս և կրթութեան ու լուսաւորութեան կենտրոն. ապա նաև բուն Հայաստանում զօրացել են հետզհետէ Սանահնի, Հաղբատի, Գլաձորի, Տա-

թեւի նշանաւոր վանքերը՝ բազմակողմանի կրթական և գրական գործունէութիւն արծարծել. Շահաբասի աշխարհաւեր բռնապետութիւնից յետոյ սկսուել է հոգեւոր ու մտաւոր վերածնութեան մի փառաւոր շրջան Հայոց Մ. Աթոռում՝ Ս. Էջմիածնում, և այդ վերածնութեան դպրոցի աշակերտներից մէկն է Մխիթար Սեբաստացին, որ ս. Էջմիածնից տարած ոգեւորութեամբն ու գաղափարներով՝ օտար հողի վերայ և օտար եկեղեցւոյ հովանաւորութեան տակ, մեր հին գրականութիւնը վերակենդանացնելու նշանաւոր գործին ձեռնարկեց։ Վերջապէս Ռուսաց տիրապետութիւնից յետոյ՝ թէպէտ մեր եկեղեցին արտաքին հալածանքների ու ներքին պառակտումների մի շատ ողորմելի շրջան էր ունեցել, իւր ներքին ուժերը կորցրել և արտաքուստ անշքացել ու աղքատացել, անկարող դարձել այդպիսով նոր ժամանակի և նոր կարգերի յառաջ բերած բազմապատիկ պահանջներին բաւականութիւն տալու, անուամենայնիւ նորա լուսամիտ վարիչների առաջին հոգսն է եղել դարձեալ դպրոցներ բանալ, թէ եկեղեցական դասի և թէ ընդհանրապէս հայ ժողովուրդի ապագան կրթական գործի վերայ հիմնել։

Նոյնը տեղի էր ունեցել աւելի վաղ և աւելի ընդարձակ չափերով Տաճկահայոց բաժնում։ Եւ ահա այն եկեղեցին, որ մեր աչքի առաջ զոհաբերութիւն է յանձն առել՝ դպրոցական գործին ըստ կարելիութեան ընդարձակութիւն և ապահովութիւն տալու համար. որի Մ. Աթոռը իւր եկամուտների 2/3 մասը

գործ է դնում ճեմարանի և տպարանի, $^1/_3$ մասը միայն հայրապետութիւն, միաբանութիւն, այլ վարչական հիմնարկութիւններ պահպանելու վրայ. որի տաճարները մերկանում են բարեզարդութիւնից, ամենաանհրաժեշտ անօթներից ու պիտոյքներից զուրկ մնում, որպէս զի գանձանակն ու ամէն արդիւնք դպրոցին յատկացուին,—այդ եկեղեցին մեր կոյր աշխարհում՝ անգլուխ քննադատների կողմից, շատ յաճախ ծանր մեղադրանքների ու դատապարտութեան առարկայ է լինում՝ իբրև մի հաստատութիւն, որ միշտ թշնամի է եղել լուսաւորութեան, հայութեանը խաւարի մէջ պահել, և այժմ էլ խոչընդոտ է լինում նորա յառաջադիմութեան։ Բացարձակ անհեթեթութիւն չէ՞ սա միթէ։

Կրթական այն մեծ դերը, որ կատարել է մեր եկեղեցին հեռու և մօտիկ անցեալում, ակներև բողոք լինելով այդ անհիմն ու անհեթեթ մեղադրանքների դէմ, ապացուցանում է դարձեալ միւս կողմից, որ կղերական ոգին չէր կարող նորա մէջ արմատ բռնել։ Կաթոլիկ եկեղեցւոյ հոգևորականութիւնը, իբրև նուիրապետական իշխանութիւն, որ բարձրից ստացած իրաւունքներով է կառավարում և երկնքի արքայութեան դռներն ըստ կամաց բանում կամ փակում աշխարհական մարդու առաջ, պէտք է ձգտէ բնականաբար ըստ կարելւոյն բարձր կանգնած լինել հասարակ ժողովուրդից, զանազան առանձնաշնորհումներ և արտօնութիւններ սեփականել և նոցանով խորհրդա-

ւոր հեղինակութիւն տալ իրեն ժողովուրդի աչքում։ Օրթոդոքս հոգևորականութիւնը, իբրև սրբազնագործ պաշտօնէութիւն, որ միայն իրաւունք ունի Աստուծոյ սեղանի սրբութիւններին մօտենալու և մատուցանելու ի համբոյր և ի հոգևոր ճաշակումն հասարակ մարդոց, պէտք է նոյնպէս խորհրդաւոր և անմատչելի լինի ժողովուրդի համար, ինքն էլ որոշ տեղ բռնէ իւր կատարած պաշտամունքի մէջ և իւր պաշտած առարկաների նման սրբազան երկիւղածութիւն ներշնչէ, պաշտօն ու պատիւ պահանջէ։ Երկու դէպքում ևս անհատին արժէք տուողը նորա պաշտօնն է. անձնական բարեմասնութիւնները կամ թերութիւնները նորա վարկը բարձրացնելու և ձգելու նկատմամբ երկրորդական նշանակութիւն ունին։ Մեր եկեղեցւոյ հոգևորականը ամենից առաջ ուսուցիչ և հովիւ լինելով՝ պէտք է աշխատէ ընդհակառակն որչափ կարելի է մօտ լինել իւր ժողովուրդին. նա ոչինչ չունի թաքցնելու, այլ կամենում է, որ իւր գաղափարներն ու իւր համոզումներն ամէնքն ունենան, իւր գիտեցածը ամէնքը գիտենան, որպէս զի կեանքի ուղիղ ճանապարհը գտնեն և իւրաքանչիւրն իւր չափով սպառազինուած լինի ներքին և արտաքին թշնամիների դէմ։

Մեր եկեղեցւոյ մղած հոգևոր պատերազմի մէջ, ինչպէս ակնարկեցինք, իւրաքանչիւր զինուոր պէտք է իւր գլուխը պաշտպանել իմանար։ Պարսկի հետ լինէր վէճը թէ մահմեդականի, յոյնի թէ նեստորականի, կաթոլիկի թէ բողոքականի՝ ամէն հայ պէտք է

իւր Հաւատի մէջ Հաստատ, իւր եկեղեցւոյ դաւանութեանն ու աւանդութիւններին տեղեակ լինէր, որպէս զի փորձութեան դիմանալ և Հակառակորդին արժանի պատասխան տալ կարողանար։ Ուստի եկեղեցւոյ և եկեղեցականութեան կենսական շահերը պահանջում էին, որ ամէնքն ուսեալ լինին և այդ տեսակէտից Հոգևորականի և աշխարՀականի մէջ խտրութիւն չզլուի։ Խտրութիւն իրօք չի էլ եղել։ Ս. Լուսաւորչի և ս. ՍաՀակի օրով Հայ Նախարարների որդիքը նոյնպիսի ուսում էին ստանում, ինչպէս Հոգևոր կոչման Համար պատրաստուող պատանիները, և Ցազկերտի առաջ մանկաՀասակ, յառաջադէմ Գարեգինը նոյնչափ Հմտութեամբ և կորովով վկայել կարող էր իւր Հաւատոյ ճշմարտութեան մասին, որչափ ծերունի վարդապետներն ու երէցները։ Գագիկ վերջին Բագրատունի թագաւորը վստաՀութեամբ պատռում էր իւր եկեղեցւոյ մի վարդապետի սխալ դաւանութեան գիրը և ինքը նստում ուղիղն էր գրում՝ իրաւամբ պարծենալով, որ ոչ մի վարդապետից պակաս չէ իւր գիտութեամբ և իբրև Հայոց թագաւոր աւելի իրաւունք ունի ամբողջ ժողովուրդի կրօնական ըմբռնման թարգման Հանդիսանալու։ Եւ միայն մեր մեծամեծներն ու իշխանները չեն, որ Հոգևոր կրթութիւն են ստացել, եկեղեցական—դաւանական խնդիրներով Հետաքրքրուել, ժողովների մասնակցել և Հոգևորականների Հաւասար ճառել ու ձայն տուել. այլ նաև Հասարակ գեղջուկ մարդիկ, մինչև իսկ Հայ կանայք, երբ օր. անօրէնների ձեռքն

են ընկել, հաւատաքննութեան ենթարկուել և ուրացութեան հարկի տակ դրուել, յաճախ զարմացրել են դատաւորներին իրենց գիտակցական քրիստոնէութեամբն ու մտածուած, համարձակ պատասխաններով։ Միջին դարերում և ժէ. դարի վերածնութեան շրջանում, մանաւանդ այն տեղերը, ուր մեր դպրավանքերը ծաղկել են, եկեղեցական ուսումը մեր մէջ շատ ընդհանուր, շատ տարածուած է եղել և յետին գիւղացիներին անգամ մատչելի։ Նոյն իսկ մեր օրերում, առաւելապէս տաճկահայոց մէջ և կովկասեան այն գաւառներում, ուր վերածնութեան շրջանի գործիչները առանձին աշխատանք են դրել, պակաս չեն հասարակ գեղջուկ մարդիկ, որոնք կենդանի հետաքրքրութիւն ունին քրիստոնէական ճշմարտութիւնների և դաւանական գիտելիքների համար, որոնք շատ լաւ ծանօթ են աւետարանի բարոյական սկզբունքներին և եկեղեցւոյ հարազատ աւանդութիւններին։

Մեր հոգևորականներն ուրեմն այն ժամանակ հեղինակութիւն և վարկ կունենային ժողովուրդի աչքում, երբ իրենց ուսուցչական և հովուական պարտականութիւնները սրբութեամբ կատարէին, ուսումով և գիտութեամբ իրենց շրջապատից բարձր կանգնած լինէին և իրենց ընթացքով բարի օրինակ տային։ Այդպէս էլ եղել է։ Ճշմարիտ յարգանք մեր հոգևորականներն անցեալում աւելի մեծ չափով են վայելել գուցէ, քան ուրիշ որևէ եկեղեցւոյ պաշտօնեաներ, և դորա պատճառն այն է անշուշտ,

որ իրենց առաւելութիւնը որոնել են ներքին արժանիքի, և ո՛չ արտաքին սրբացման միջոցների մէջ։—Առարկողներ են լինում, թէ մեր հոգևորականութիւնը մեծ իշխանական ձգտումներ չի ցոյց տուել և մի առանձնացած զօրեղ դասակարգ կազմելու հետամուտ եղել՝ միայն նորա համար, որ մեզանում ինչպէս ամէն ինչ խեղճ, անզարգացած, անգոյն վիճակ է ունեցել, այնպէս և եկեղեցւոյ վարչութիւնը։ Սակայն այդ տեսակ առարկութիւնները յառաջ են գալիս նորանից, որ մեր եկեղեցւոյ պատմութիւնը դեռ մի փակ գի՛րք է, և ոչ ոք նեղութիւն չի յանձն առնում իսկական պատմութեան հետ ծանօթանալու, այլ ամէնքըն իրենց հիւանդոտ երևակայութեան պտուղները փոխադրում են հեռաւոր անցեալի մէջ և նոցա վերայ կամայական տեսութիւններ հիմնում։ Հեռու չէ այն օրը, երբ պատմութիւնը կուսումնասիրուի և կպարզուի ինչպէս պէտք է. երբ աւելի լուրջ և անկողմնապահ հայեացքով կնայեն անցեալ և ներկայ կեանքի խոշոր երևոյթների վերայ, և կյայտնուի, որ մեր եկեղեցին շատ աւելի փառաւոր անցեալ է ունեցել՝ արտաքին անշքութեան մէջ ներքուստ շատ աւելի զօրեղ եղել ու բազմակողմանի գործունէութիւն ցոյց տուել, քան սովորաբար կարծում են։ Կյայտնուի օրինակ, որ Ժ—ԺԲ. դարերում արդէն նա հանդէս է բերել կրօնական գաղափարների հասունութեան և բարոյական կեանքի զարգացման այնպիսի երևոյթներ, որոնք կաթոլիկ եկեղեցու ծոցում ԺԳ—ԺԴ.

դարերում են երևում, և այն գուցէ ոչ առանց կողմնակի ազդեցութեան Հայաստանից փոխադրըւած շարժումների, ինչպէս և այդ ազդեցութիւնն ակներև ու անուրանալի է Պատկերամարտութեան և Պօղիկեան—Բոգոմիլեան աղանդների նման նշանաւոր պատմական շարժումների վերայ։ Հայոց եկեղեցին յամենայն դէպս զարգացման այնպիսի աստիճանների վերայ եղել է և նորա պաշտօնէութիւնն այնչափ ուժ և ազդեցութիւն՝ որոշ դարերում մանաւանդ, ունեցել է, որ հեշտութեամբ կարող էր մի զօրեղ կղերական դասակարգ կազմել, եթէ այդ անհրաժեշտ պահանջ լինէր եկեղեցական գրութեան, և ո՛չ ընդհակառակն։ Անշուշտ անտեղի կլինէր պնդելը, թէ կղերական ձգտումով անհատներ, կամ նոյն իսկ հոգևոր պաշտօնեաների ամբողջ խմբակցութիւններ ու յաջորդական շարքեր ո՛չ մի տեղ և ո՛չ մի ժամանակ Հայոց մէջ չեն երևացել։ Արդէն այն հանգամանքը, որ մեր եկեղեցականները շարունակ շփման մէջ են եղել՝ նախ յոյների, ապա կաթոլիկների հետ, շատերը նոցա մօտ կրթութիւն ստացել և որոշ չափով նոցա հոգին ժառանգել, առանց հետևանքի մնալ չէր կարող և պէտք է իւր հետքերը թողնէր։ Բայց այդ հետքերը տևական չեն եղել. եկեղեցին առ ժամանակ տարբել է նոցա և կրկին, իւր հարազատ ոգուն հաւատարիմ մնալով՝ առաջին պատեհ առթիւ դուրս մղել։

դ) Իսկ այդ ոգին կենդանի պահելու ե ր ր ո ր դ, գուցէ ամէնից զօրաւոր պատճառը եղել է մեր եկեղեցու հալածանքը, յարատեւ ճնշումների ու բռնութիւնների ենթակայ վիճակը։ Ընդհանուր եկեղեցու մէջ էլ, քանի դեռ նա հալածանքներ էր կրում ամէն կողմից, կղերական ոգին զօրանալ չէր կարող։ Հալածանքի ժամանակ պատասխանատուութիւնը ընկնում է սովորաբար համայնքի ներկայացուցիչների կամ առաջնորդողների վերայ. և քրիստոնէութեան համար Հռովմէական կայսրների հանած հալածանքները մեծ մասամբ ուղղուած էին եպիսկոպոսների, աչքի ընկնող քարոզիչների, գրողների և այլ հեղինակաւոր անձնաւորութիւնների դէմ։ Նոքա մտածում էին, որ եթէ եկեղեցին զրկուի իւր վարիչներից, հասարակ ժողովուրդն ինքն իրեն հեթանոսութեան գիրկը կդառնայ. ուստի որսալ էին տալիս յատկապէս այդ վարիչներին, բանտերում մաշեցնում և նահատակութեան արիւնով իրենց հաւատոյ ճշմարտութեան համար վկայել ստիպում։ Այսպիսով ըստ ինքեան կատարուում էր Փրկչի պատուէրը, թէ ով իւր հետևողների մէջ մեծն է, նա պէտք է լինի ամէնքի սպասաւորը, ամէնքի համար չարչարուողը, իւր անձն ամէնքի համար դնողը։ Մեծութիւնն այստեղ փառասիրական ցանկութիւնների յագուրդ տալու և նիւթական բարիքներ վայելելու միջոց չէր, այլ նահատակութեան ասպարէզ, և ով ընտիրն էր՝ նա միայն կարող էր վստահանալ այդ ասպարիզի վերայ ելնելու, ո՛չ շահախնդիրը։ Իսկ ուր շահախնդրութիւն չկայ,

աշխարհական իշխանութիւն ու հարստութիւն չկայ՝ առիթ չկայ նաև հոգևորը մարմնականի համար շահագործելու, որ կղերական դրութեան հիմքն է կազմում, ինչպէս տեսանք։

Արդ, Հայոց եկեղեցին գրեթէ մինչև մեր օրերը մնացել է նոյն այն հալածական վիճակի մէջ, որի մէջ գտնւում էր ընդհանուր եկեղեցին առաջին երեք դարերում։ Ի՞նչը պէտք է դրդէր ուրեմն հայ հոգևորականութեանը ժողովուրդից անջատուելու և մի առանձին կղերական դասակարգ կազմելու. այդ խեղճ, տառապեալ՝ մէկը միւսից վատթար բռնաւորների լծի տակ հեծող ժողովուրդի ի՞նչը պէտք է նա շահագործէր. ի՞նչ դասակարգային առանձնաշնորհումներից ու արտօնութիւններից պէտք է օգտուել կամենար։ Ե. դարում Պարսից մեծ-հալածանքն էր, և հայ հոգևորականութեան պարագլուխների ամենամեծ վաստակն այն եղաւ, որ Ապար աշխարհում դահճի սրի տակ դրին իրենց պարանոցը։ Զ. դարում այդ հալածանքը մեղմացաւ, բայց փոխարէնը յառաջ եկան դաւանական անվերջ վէճերը, և հայ հոգևորականները իրենց բոլոր ուժերը պէտք է լարէին մի կողմից նեստորականների և միւս կողմից քաղկեդոնականների դէմ մաքառելու. շարունակ ժողովուրդի մէջ պէտք է լինէին, շարունակ պատրաստ հայրենի աւանդութեանց համար նախանձախնդրութեան և անձնուիրութեան օրինակ տալու։ Է. դարում սարսափելի խորշակը բարձրացաւ արաբական անապատներից և քրիստոնէութեան

ծաղկած բուրաստանը գրեթէ ամբողջ արեւելքում կարճ միջոցի մէջ թարշամացրեց, այրեց, խղճալի անապատ դարձրեց. միայն Հայաստանի հպարտ լեռներն աննկուն կուրծքը դէմ տուին այդ խորշակին և իրենց անմատչելի ծերպերում ու խորաձորերում այնչափ կենդանութեան սաղմեր պահեցին, որ երբ ահաւոր դարերի անծայր թշուառութիւններից ու սոսկումներից յետոյ աճեցին և զօրացան և ամբողջ երկիրը լցրին դարձեալ քրիստոնէութեան փառքով։ Ինչե՞ր չքաշեց հայ եկեղեցականութիւնն այդ ժամանակամիջոցում, ինչ փորձութիւնների չդիմացաւ և ի՞նչ զոհաբերութիւններ յանձն չառաւ։ Նորա դէպի նեղեալ հօտն ունեցած անձնուիրութեան չափը որոշելու համար բաւական է միայն Սահակ Ձորափորեցի հայրապետի օրինակը, որի դիակն անգամ պատնէշ դարձաւ արաբական կատաղի զօրավարի առաջ և երկիրն ահռելի աւերածութիւնից ազատեց։ Այնուհետեւ քանի՛ անգամ կրկնուեցան նոյն յարաբերութիւնները։ Թուրքաց արշաւանքները ԺԱ. դարում, Թաթարականը ԺԳ, Լանկթեմուր ԺԴ. դարում՝ արիւն արեան վերայ, աւերակ աւերակի վերայ աւելացրին, և եկեղեցականութիւնը միշտ առաջին շարքերի մէջ՝ այդ անսպառ նահատակութեան ասպարիզում։ Հայոց հայրապետները բանտ են նստում և գերի են տարուում. օտար բռնաւորների առաջ են ելնում՝ նոցա գթութիւնը հայցելու համար. բնիկ իշխաններին իրար հետ հաշտեցնել և յանուն հասարակաց օգտի միաբանութեան բերել են աշխատում։ Հայ

վարդապետները մի կողմից գրով և խօսքով յունական խարդաւանանքների, կաթոլիկական մարդորսութեան դէմ են կռուում, միւս կողմից ցիրուցան ժողովուրդի մնացորդներին եկեղեցւոյ յարկի տակ, վանքերի շուրջը ժողովում՝ սիրտ տալիս, մխիթարում։ Սպառում է հետզհետէ հայութեան քաղաքական ուժը, վերջանում են մէկը միւսից յետոյ հին նախարարական ու իշխանական տները, և մէջտեղ մնում է մի անգլուխ, անտէր ժողովուրդ՝ իւր հոգևոր առաջնորդներով. որոնք սակայն իրենց գլուխը չեն կորցնում։ Բաբելոնից վերադարձած հրէաների նման ամէն կողմից ժողովուում են, միմեանց քաջալերելով հին աւերակների վերայ նոր շէնքեր կառուցանում, Հայաստանեայց Ս. Աթոռը վերականգնում և ի սփիւռս աշխարհի տարածուած հայերի համար միութեան և փոխադարձ պահպանութեան մի անփոխարինելի կենտրոն դարձնում, անվեհեր կերպով շարունակում գոյութեան կռիւը նորանոր հոգևոր և մարմնաւոր թշնամիների դէմ, մինչև հասցնում են արդի քաղաքակրթական կեանքի լոյս աշխարհը։

Եւ հայ հոգևորականութիւնը հենց մեր օրերում՝ մեր աչքի առաջև, իւր ուժասպառ տեղովն անգամ ժողովուրդի գլխին եկած բոլոր դժբախտութիւնների մէջ հաւատարիմ մնաց իւր կոչմանը։ Տաճկահայոց դատի պաշտպանը, նոցա ցաւերի ու տառապանքի թարգմանը հանդիսացաւ նա քրիստոնեայ զօրեղ պետութիւնների առաջ. Ծխական դպրոցներն ու եկեղեցական գոյքը պահպանելու

համար ամէն վտանգ, ամէն զրկանք ու սպառնալիք աչքի տակ առաւ և անտրտունջ կերպով աքսորանքի ու տնտեսական անձկութեան նեղութիւնները տարաւ. վերջին կոտորածների ժամանակ դարձեալ ամենապատուաւոր դեր կատարեց. իւր ներկայացուցիչները վտանգի վայրերում հաստատուն մնացին իւրաքանչիւր դիրքի վերայ, արկածեալների աղէտն ու բողոքը հրապարակ հանեցին, բոլոր հնարաւոր միջոցները գործ դրեցին նոցա օգնութիւն հասցնելու համար։

---

Իսկ երբ այս բոլորից յետոյ այնուամենայնիւ պնդողներ են լինում, թէ հոգևորականութիւնը, ինչպէս ամէն տեղ, այնպէս և հայերի մէջ ժողովուրդից անջատ մի մարմին՝ մի առանձին կղերական դասակարգ է, որ իւր յատուկ դասակարգային շահերն ունի, և քնում ելնում՝ միայն այդ շահերի մասին է մտածում, ժողովուրդին մոլորեցնելով ու կեղեքելով իւր օգուտը միայն որոնում ու յղփանում,— ի՞նչ անուն կարելի է տալ այդ կամաւոր կուրութեան, այդ նոր տեսակի խեղճ լուսամտութեան։ Ի՞նչ անուն տալ մանաւանդ այն հրաշալի դատողութեան, որով իւրաքանչիւր հայի վերայ նուիրական պարտականութիւն է դրւում՝ հալածել հոգևորականներին, խտրութիւն չդնել միջոցների մէջ՝ նոցա անարգելու, վատաբանելու, բարոյապէս սպանելու,—որովհետև լուսաւորեալ Ֆրանսիայում հոգևորականներին հալածում են։

Ցաւալին այն է, որ այդ տեսակ դատողութիւններ հարիւրաւորների ու հազարաւորների բերանից լսուում են, և ո՛չ ոք նեղութիւն չի յանձն առնում բացատրելու և իրական ապացոյցներ բերելու, թէ ինչո՞վ է հայ հոգևորականութիւնն արժանացել այդ ծանր դատապարտութեանը, ինչպէ՞ս է կեղեքել ժողովուրդին. ի՞նչ է ունեցել այդ ողորմելի ժողովուրդը, որ կեղեքելու և շահագործելու նիւթ լինէր։ Չեն ասում. եթէ այս կամ հոգևորականը որոշ դիրքի ու պաշտօնի մէջ զեղծումներ արել է՝ աշխարհական լինէր արդեօք նոյնը չէ՞ր անի. արդեօք բոլորովին մաքուր, խոհեմ ու արդար են պաշտօնների մէջ եղող աշխարհական մարդիկ՝ ժողովուրդից ընտրուած երեսփոխանները, հոգաբարձուներն ու զանազան պատգամաւորները. և արդեօք ընդհակառակն հոգևորականի զեղծումն հենց նորա համար աւելի աչքի չի ընկնում, որ նորա գաղափարական կոչումը աւելի խիստ պարտաւորութիւններ է դնում նորա վերայ և աւելի անհասկանալի ու դատապարտելի դարձնում այս կամ այն թերութիւնը, որ հեշտութեամբ ներուում է աշխարհականին։ Եւ մի՞թէ երևակայել կարելի է, թէ հոգևորականների պակասութիւնները նոցա սպասաւորած եկեղեցուց ու աւետարանից են յառաջանում, և ո՛չ մարդկային բնական թուլութիւններից և այն արատաւոր միջավայրից, որտեղ նոքա սնուում ու գործում են։

Միջավայրն ուրեմն մաքրել պէտք է, մարդկային թուլութիւնները դաստիարակութեան և

ուսման միջոցով հարթել, հոգևոր կոչման խիստ պահանջների հանդէպ գնելով իսկ՝ նոցա ազեղութիւնն աւելի զգալի դարձնել, և ջանալ, որ մարդիկ համապատասխանեն այդ կոչման. ոչ թէ կոչումը վերանայ նորա համար, որ համապատասխան մարդիկ քիչ են։ Ի՞նչ օգուտ կունենայ Հայոց ազգը, եթէ իրօք ոչնչացուի կամ բոլոր ասպարէզներից դուրս քշուի մարդոց այն միակ խմբակցութիւնը նորա մէջ, որ ուխտ է անում գաղափարական կեանքով ապրելու, յաւիտենական ճշմարտութիւնների քարոզիչ և անսահման բարւոյ ուղեցոյց լինելու. որ դարաւոր անցեալում կատարել է այդ ուխտը, որչափ մարդկային բնութեան և մեղսոտ աշխարհի անձուկ պայմանները թոյլ են տուել. որի իւրաքանչիւր ներկայացուցչի վերայ մինչև այժմ էլ ժողովուրդը նայում է իբրև սրբութեան պաշտօնէի վերայ և սուրբ ու գաղափարական գործ սպասում։ Արդեօք հե՞շտ կլինի մի նոր խմբակցութիւն ստեղծել դորա տեղ՝ նման պարտաւորութիւններով։ Հնարաւ՞որ կլինի մանաւանդ կանգնել մի նոր հաստատութիւն Ազգային եկեղեցւոյ փառաւոր շէնքի տեղ, որի հովանու ներքոյ՝ ինչպէս սեփական տանը, ինչպէս հայրենի հողի վերայ են զգում իրենց թէ Ամերիկայում և թէ Պարսկաստանում ու Հնդկաստանում, թէ Պետերբուրգում և թէ Բաղդատում ապրող հայերը՝ միմեանց հետ կապուած ընդհանուր պատմական անցեալի կապերով, որ նոքա անցրել են բոլորը միատեղ, իրենց բուն հայրենիքում՝ նոյն եկեղեցւոյ

առաջնորդութեամբ, նոյն քրիստոնէական հաւատոյ ոգեւորութեամբ, նոյն ազգային գաղափարներով ու բարոյական սկզբունքներով։ Մի՞թէ կարող են նոր հաստատութիւններ և ինչոր վերացական ,,ազգային ինքնորոշումներ'' այդպիսի զօրաւոր դրական կապեր հիւսել հազարաւոր մղոններով միմեանցից հեռու, միմեանցից անչափ տարբեր քաղաքական ու քաղաքակրթական պայմաններում՝ լեզուով, աշխարհայեացքով ու նիստուկացով միմեանց բոլորովին աննման երկրներում ապրող հայերի մէջ։ Կարելի՞ է եկեղեցին քանդել և սպասել, որ երևակայական ,,ինքնորոշումները'', հայութեան ամբողջութիւնը պահպանեն և մի նոր դրօշակի ներքոյ բոլոր հայերին միասին դէպի մի ընդհանուր ապագայ առաջնորդեն։ Եւ ի՞նչ պիտի լինի այդ դրօշակը, որ աւելի վսեմ, աւելի գաղափարական ու խորհրդաւոր նշանաբաններ ունենայ, քան եկեղեցին մինչև այժմ ունեցել է։

Իսկ եթէ մեր եկեղեցւոյ արտաքին կազմակերպութեան մէջ շատ բան համապատասխան չէ նորա գաղափարական նշանաբաններին, կամ մեր ժամանակի պահանջներին, ի՞նչն է արգելում այդ նշանաբանների ու պահանջների համաձայն բարենորոգումներ անելու։ Բաւական է, որ բարենորոգութեան կարիքը եկեղեցի—ազգի ընդհանրութեան մէջ զգացուի և գիտակցօրէն յառաջ տարուի. եղած արգելքներն էլ հեշտութեամբ կվերանան։ Ազգային եկեղեցւոյ մեծ առաւելութիւնը հենց այն է, որ էական խնդիրներում արտաքին միջա-